# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՎԱԹՍՈՒՆՈՒԵՕԹՆԵՐՈՐԴ ՏԱՐԻ

**1953**

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Siebenundsechzigster Jahrgang

**1953**

Wien

Mechitharisten - Buchdruckerei

*Ձեռագիրք. Երուսաղէմ, Թ.* 1193, *Թղ.* 82*բ* (1476)։ *Զմմառ, Անտոնեանց Թ.* 100, *Թղ.* 189*ա*—190*բ* (*ԺԶ.*)։ *Բերլին, Թ.* 67, 177*ա*—178*բ* (1703)։ *Վենետիկ, Գանձարան Ա.* (?), *էջ* 138։

*Հրատարակուած՝ Տեւկանց, Հայերգ, էջ* 4—6։

*Մենք բնագիր առած ենք Անտոնեանց Թ.* 100 *եւ համեմատած Տեւկանցի օրինակին հետ։*

*Սաղաղայ երէց հետեւած է հոս Գիրք մանկութեան Քրիստոսի անվաւերականին (հմմտ. Անկանոն գիրք Նոր Կտակարանաց, Վենետիկ* 1898, *էջ* 41—42, 49—50, 60—65)։

3. ՊՈՌԵՑԻ ՍԱԴԱՂԻ ԱՍԱՑԵԱԼ

*Երեւանի Մատենադարանի Թ.* 5306 *ձեռագրին մէջ գտնուած է Ֆրիկի «Ի վերայ եղբայրասպանին» տաղի («Օրհնեալ անուն արարողին» սկզբնաւորութեամբ) մէկ փոփոխակը, որուն առաջին տունը անընթեռնելի է։ Վերնագիր կը կրէ «Պոռեցի Սաղաղի ասացեալ»։ Այս փոփոխակը հրատարակուած է* 1936*ին Երեւանի «Գրական թերթի» մէջ (հմմտ. Ֆրիկ. բանաստեղծութիւններ, Երեւան* 1941, *էջ* 262, *ծան.* 36)։ *Ինձ անմատչելի է այդ հրատարակութիւնը. անծանօթ է այլուստ նաեւ Պոռեցի Սատաղայ։ Նոյն տաղին երկրորդ փոփոխակ մ՚ալ ունինք Աշըղ Քոչակ Վանեցւոյ անունով եւ «Ա՛յ սիրելիք, ականջ դըրէք...» սկզբնաւորութեամբ, զոր գտած է Տիրայր արքեպիսկոպոս Վենետիկի Թ.* 1823 *ձեռագրին մէջ եւ հրատարակած Ֆրիկ-Դիւան, էջ* 551—554։ *Թէ այս երկու փոփոխակները իրարու հետ ի՞նչ համեմատութիւն ունին, կարող չեմ ըսել։*

*Չեմ կարծեր թէ Պոռեցի Սաղաղայ որեւէ աղերս ունենայ Ռստանցի Սաղաղայի հետ։*

Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ

# ԻՐԱՆԵԱՆ ՏԱՐՐՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԻՆ ՄԷՋ*

*Թէ Հայ ժողովրդական հաւատքին մէջ բազմաթիւ իրանեան տարրներ կան՝ վերահասու եղած ենք շնորհիւ այն աշխատութիւններու, զորոնք կատարած են զանազան հետազօտողներ։ Աբեղեան, Անանիկեան, Խմին,* Wilhelm[1] — *քանի մը անուն միայն յիշած ըլլալու համար — ապացուցած են թէ հայ ժողովրդական հայեացքներու եւ սովորութիւններու մէջ շատ մը մնացորդներ կան իրանեան դիցաբանութենէն։ Ուրիշ իրանեան տարրներ ալ տակաւին մերկացումի կը սպասեն։ Յաջորդիւ իրանա-հայ հեթանոսութեան շրջանէն այդ մնացորդներու քանի մը հատը պիտի ներկայացնենք։*

1. ԳՐՈՂ — ՍՐՈՇ

*Հայ ժողովրդական հաւատքի մէջ ունեցած իր երբեմնի նշանակութեան պատճառաւ՝* Գրողը *այն դիցաբանական դէմքերէն մին է, որոնք հայագէտներու բաւական գլխացաւ առթելէ վերջն ալ ցայսօր կը մնան խնդրական թէ ի՛նչ ծագումէ են։ Տեսնենք նախ թէ Չերազ ի՞նչ կը գրէ ասոր մասին։*

*«Գրող՝ հայերէն կը նշանակէ տանող* կամ գրագիր։ Իբրեւ տանող (կրող)՝ կրնար նոյնացուիլ յոյն դիցաբանութեան* Քարոնի *եւ նոյն իսկ* Աքերոնի *հետ, որոնք կ՚օգնէին ննջեցեալներու յուղարկաւորութեան։ Իբրեւ գրող՝ կը համապատասխանէ* Հերմէսի *կամ Եգիպտացւոց* Թոթին*։ Այս երկրորդ ստուգաբանութիւնը աւելի ընդունելի կը թուի, անո՛վ որ հայ ժողովուրդը՝ քրիստոնեայ դառնալէ վերջն ալ՝ պահած է ա՛յն էակներու հաւատքը, որոնք մարդկային գործերը գրի կ՚անցնեն։ Ստուգիւ ալ ան կը հաւատայ թէ ամէն մարդ իր աջ ուսին վրայ հրեշտակ մ՚ունի, որ իր բարի գործերը խորհրդաւոր գրքի մը մէջ կը գրէ եւ կու լայ, եթէ իր*

* Յօդուածագիրս Dr. J. Hambroer, նուիրուած է համեմատական ազգագրութեան։ Ուսած է ի թիւս բազմազան լեզուներու, նաեւ հայերէն։ Յօդուածս գրած է Ուսումնաթերթիս համար. կը ներկայացնենք գերմաներէն բնագրին հայերէն թարգմանութիւնը։

[1] *Մ. Աբեղեան*, Der armenische Volksglaube, Leipzig 1899. — *Անանիկեան, ի* Encyklopaedia of Religion and Ethics, t. I, Armenia (Zoroastrian). Izaljedovarija i Stadi N. O. — *Խմին*, Moskva 1896, 1—109. — E. Wilhelm, Analogies in Iranian and Armenian Folklore in Spiegel Memorial Volume, Bombay 1908, 65—83.

* *Անշուշտ* կրող *արտասանութեամբ։ Թրգմ.*։

*պաշտպանեալը մեղանչէ եւ թէ ձախ ուսին վրայ կը կրէ չար հրեշտակ մը, որ իր յոռի գործերը գրքի մը մէջ գրի կ'անցնէ եւ որ կը խնդայ, երբ իր պաշտպանեալը մեղք մը կը գործէ։ Այս գրքերը կը համեմատուին վերջին դատաստանին օրը եւ անհատը դրախտ կամ դժոխք (բառ՝ պարսիկ ծագումով) կը ղրկուի՝ եթէ իր բարի կամ չար գործերը, ոսկիէ կշիռքի մը վրայ կշռուելէ վերջ՝ ամէնէն ծանրը ըլլան։*

*«Գրողը՝ Հայերու համար աստուածութիւն մըն է աստուածներու սուրհանդակի մը պէս չարժուն· տգեղ, չար։ Ատկէ՛ ահա սա ասութիւնները· Գրողը տանի զքեզ· Գրողին բերանը երթաս։ Անոնք (Հայերը) Գրողին կը վերագրեն նաեւ ճարպիկութիւն, խորամանկութիւն, արթնութիւն — յատկութիւններ, որոնք Հերմէսի կը վերագրուէին Արկադիացիներէն։ Ահա թէ ինչո՛ւ անոնք անձի մը, որուն ճարպիկութեան վրայ կը հիանան՝ կ'ըսեն· Ի՞նչ Գրող ես դու»*[2]։

*Ասոնք են Զերազի յառաջբերութիւնները, որոնք յունական Քարոնին, Աքերոնին եւ Հերմէսին, ինչպէս նաեւ եգիպտական Թոթին միջեւ տատանելով՝ այս դիցական դէմքին՝ Գրողին էական, սկզբնական գործունէութիւնը լոկ կը չօշափեն իբրեւ հոգեառ, իբրեւ էակ մը՝ որ մեռելներու հոգիները կ'առնէ եւ դատաստանի կ'առաջնորդէ։*

*Ինչպէս կ'երեւայ՝ Զերազի խօսքերը, իրենց էական գծերով, Խմինէն առնուած են, որ Գրողը յիշեալ հեթանոս աստուածներու եւ հին հայ, միայն Ագաթանգեղոսէն յիշուած* Տիւր *(ասորերէն Տիր, եգիպտ· Թոթ, փիւնիկ· Թաուտ) անունով աստուածութեան մը հետ աղերսի մէջ կը դնէ։ Այս պարագային հին Հայոց Տիւրը պիտի համապատասխանէր Հերմէսին կամ Մերկիւրիոսին եւ Եգիպտացւոց Թոթին հետ ալ մերձաւոր կապեր պիտի ունենար*[3]։

*Ահա Ագաթանգեղոսի տեղեկութիւնը· «...Ապա ինքն իսկ թագաւորն (Տրդատ) խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն, եւ որ յԵրազամոյն տեղիսն անուանեալ կայր։ Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազահան պաշտաման Տրի դից, դպրի գիտութեան քրմաց, անուանեալ Դիւան գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան· Նախ ի նա ձեռն արկեալ՝ քակեալ այրեալ քանդեցին*[4]*»։ Տիւրը հոս Որմիզդի գրիչը կոչուելուն՝ Խմին զայն Գրողին քով կը զետեղէ։ Ահա մեր ըսելիքը այս ծանօթ հայագէտին·*

*Ագաթանգեղոսի հին Հայոց Տիւրի մասին գրած այս չափազանց հակիրճ տեղիքէն — Տիւր-Թոթ — անունի նմանութենէն զատ՝ ուրիշ ոչ մէկ բան կարելի է եզրակացնել· ատկէ բնաւ յայտնի չ'ըլլար թէ Տիւրը հոգեառ կամ հոգեդատ է։ Խմինի լոկ — Տիւր-Թոթ — անունի նմանութեան վրայ յեցած եզրակացութիւնը թէ Տիւր-Գրող նոյն են՝ երեւակայութիւն է։ Ընդհակառակն Թոթի եւ Գրողի միջեւ հասարակաց գիծ մը կայ, քանի որ առաջինը՝ Եգիպտացւոց մահադատի ատեն Հորոսի եւ Անուբիսի քով նստած՝ դատաստանի արդիւնքը տախտակի մը վրայ կը նշանակէ*[5]*, մինչ ուրիշ եգիպտական աղբիւրի մը համեմատ՝ մահադատի ատեն իբրեւ դատախազ եւ վարձատրող կը ներկայանայ*[6]*։ Նոյնպիսի գործեր, ինչպէս վարը պիտի տեսնենք, Գրողի կը վերագրուին։ Գիտականօրէն թոյլատրելի չէ սակայն Խմինի քմահաճ լրացումը, որ հին հայ Տիւրի մէջ — ի նմանութենէ Թոթի — հոգեառ մ'ալ տեսնել կ'ուզէ։ Տիւրի համար այդպիսի պաշտօն մը չի յիշատակեր Ագաթանգեղոս։ Տիւր չէր, ուրեմն, ո՛չ հոգեառ եւ ոչ ալ հոգեդատ։*

*Տիւր՝ Ագաթանգեղոսէն գրիչ Որմզդի կ'անուանուի, որուն համար Խմին զինքը Գրողին հետ կը նոյնացնէ։ Իբրեւ գրիչ աստուծոց՝ Տիւր անշուշտ ունի ծանօթութիւն աստուածային իմաստութեան, որ զինքը ատակ կ'ընէ իբրեւ գիտութիւններու եւ արուեստներու ուսուցիչ երեւան գալու։ Սակայն այս գրիչը՝ մարդկային գործերը նշանակող Գրողի հետ ի՞նչ առնչութիւն ունի։ Անշուշտ ո՛չ աւելի՝ քան ինչ որ ունի պետութեան մը նախարարը՝ գիւղի գրողի մը*

[2] *Մ· Զերազ*, Notes sur la Mythologie arménienne *ի* Transactions of the ninth Internat. Congress of Orientalist, vol. II, 338. *Նոյնը*՝ L'Orient inédit. Legendes et Traductions arméniennes, grecques et turques. *Պարիս* 1912, *էջ* 258։

[3] *Խմին, անդ՝ գլ·* 24։

[4] *Ագաթանգեղոս, Տփղիս* 1909, *էջ* 404։

[5] Lange *ի գիրս* Bertholet-Lehmann*ի* Lehrbuch der Religionsgeschichte, I, Tübingen 1925, *էջ* 475։

[6] Junkers *ի* Settimana Internazionale di Etnologia, IV. Sessione. Paris 1926, *էջ* 281, 296։

հետ։ Բայց աւելի վճռականը կայ. Հայ ժողովրդական հաւատքի մէջ ամենադոյզն իսկ ակնարկութիւն չկայ թէ Գրող աստուածոց գրիչ, քահանայական իմաստութեան կամ արուեստներու եւ գիտութիւններու ուսուցիչ է։ Հայոց համար Գրողը էապէս եւ միշտ հոգեառ եղած է։ Իբրեւ այսպիսի՝ ան կրնայ դրուիլ պահլ. Սրոշի, զենդ. Սրաոշայի քով. այն իրանեան գերազանց հոգեառին, որ իրանա-հայ հեթանոսութեան անկարելի է որ օտար եղած ըլլայ։ Այս խնդրոյն պաշտպանութեան համար տեսնենք նախ հայ ժողովրդական հաւատքի մէջ եղած Գրողի էութիւնը։

Հին հայ ժողովրդական հաւատքի մէջ Գրողը հոգեառ (Psychopomp) է, դեր մը, որ յետոյ, քրիստոնէական շրջանին, հետզհետէ Գաբրիէլ հրեշտակապետին անցած է։ Ասիկա յստակօրէն ճանչցած է Բենսէ, որ «Ազգագրական Հանդէս»ի մէջ կը գրէ. «Գաբրիէլի տեղ յառաջ Գրողը թէ՛ գրիչ էր մարդկային գործերու եւ թէ հոգէառ, հոգեառ։ Թէեւ Գրողի էութեան հայոց որոշ նկարագրութիւններ չկան, սակայն յաջորդ ասացուածներէն ու անէծքներէն թէ՛ անոր անձնաւորութիւնը եւ թէ՛ իր պաշտօնը յայտնի կ'ըլլայ։

1. Գրող «կոյր» եղած է։ Երբ օր. համար մէկու մը դէմ ունեցած մեծ ատելութիւնը ցուցնել կ'ուզուի՝ կ'ըսեն. «Գիտեմ... ան ինծի հանդէպ կոյր Գրող մըն է»։

2. Գրող հոգեառ էր։ Օրինակ. «Գրո՛ղը տանի». «Գրողի՛ն յանձնեմ քեզ». «Հոգիդ Գրողի՛ն տաս»։

3. Գրողը հոգին կ'առնէ՝ բերնին մէջ բան մը դնելով, ինչպէս որ Գաբրիէլի մասին կը հաւատան թէ խնձորով մը տղուն բերնէն հոգին կ'առնէ։ Օրինակ. «Գրողի պատառը բերա՛նդ դնեմ[7]»։

Բենսէի այս նկարագրականէն մեզ հետաքրքրողը՝ մանաւորապէս Գրողի հոգէառ ըլլալն է։ Ալիշան՝ հին հայ աղբիւրէ մը քաղելով՝ կու տայ մեզ ուրիշ, անհամեմատօրէն կարեւոր մանրամասնութիւն մըն ալ — Գրող՝ իբրեւ բարի հոգէառ։ Հոգէառը յաճախ հրեշտակ մը կը մտածուի, որ նաեւ Գրող կը կոչուի եւ ամբողջ աշխարհը կը շրջի՝ Աստուծոյ հրամանը կատարելու համար։ Մեղք կը համարուի Գրողն անիծելը, վասն զի «ով որ Գրողը կ'անիծէ՝ զԱստուած կ'անիծէ[8]»։ Հետեւաբար պէտք է որ Գրող սկզբնաբար բարի հոգի մ'եղած ըլլայ։ Ուստի Հայ ժողովրդական ներկայ հաւատքի մէջ անոր դիւական նկարագիրը — դատելով իր կատարած պաշտօնէն — վերջէն ստացուած գիծ մըն է։ Ասիկա անո՛վ կ'ապացուցուի որ Գրող, ինչպէս յիշեցինք, «կոյր» կը ներկայացուի։ Գրող-Սրոշի նոյնութեան ենթադրութեամբ՝ այս կուրութիւնը հաւանական է։ Պարսիկներու պահապան ոգին եւ հոգէառը՝ պահլաւական գրականութեան մէջ արդար, երկիւղած Սրոշ, ահրադ-Սրոշ կը կոչուի[9]։

Պարսկական դատի կամուրջին — Չինուատ կամուրջ — քով տեղի ունեցած մահդատին մէջ արդար եւ անաչառ վճիռ տրուելուն համար՝ կրնայ իրաւամբ կոյր արդարութիւն համարուիլ։ Իսկ եթէ նկատի առնուի որ Գրող՝ մեղմական կերպով, քաղցր պատառով մըն է որ հոգին կ'առնէ, եւ թէ այսօր Գաբրիէլ հրեշտակապետ — բարի հոգի մը — հոգէառի պաշտօն կը կատարէ՝ իրաւամբ կրնանք Գրողը սկզբնաբար բարի հոգէառ մը նկատել։ Սակայն իր նկարագիրը նոր, օտար գիծ մը ստացած է, այնու որ իբրեւ հոգէառ՝ հոգին մարմնոյ մէջէն կ'առնէ։ Այս մանրամասնութիւնը պարսկականին հակառակ է, վասն զի Պարսից համեմատ մահը չար սկիզբէն՝ Ահրիմանէն՝ յառաջ կու գայ[10]։ Հոս հաւանօրէն իսլամական ազդեցութիւն տեղի ունեցած է, քանի որ Ղուրանի (Սուրա 79, 1) համեմատ՝ Ազրայէլ հոգէառը՝ Աստուծոյ հրամանով կ'առնէ մարդուն հոգին[11]։ Շեշտենք նաեւ որ Հայաստանի ինչ ինչ տեղեր երկու հոգէառներ կ'ընդունուին. բարի մը՝ բարեպաշտներուն, չար մը՝ մեղաւորներուն համար[12]։

Ինչպէս յետոյ մանրամասնօրէն պիտի ապացուցուի՝ Գրող սկզբնաբար Սրոշի (աւ. Սրաոշա) հետ նոյն էր։ Ահա համառօտիւ քանի մը գծեր Պարսից յետնախօսութեան (eschatologie) մէջ իր դերի մասին։ Դհալլա

---

7 Ազգագրական Հանդէս, Զ. 8։

8 Ալիշան, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց, Վենետիկ 1895, էջ 226։

9 H. Nyberg, Hilfsbuch des Pehlevi, II. Glossar. Upsala 1931, 5, 206.

10 Yasna 30, 4. Bahman Yašt 1, 5. Cf. J. Darmesteter: Zend-Avesta. 3. Aufl. 3 Bände. Paris 1892—1893.

11 B. A. Donaldson: The wild rue. A Study of Muhammadan Magie and Folklore in Iran. London 1938, 68. Հրէական հոգէառ Սամայէլ, չար ոգի մը՝ J. Scheftelowitz: Die altpers. Religion u. d. Judentum. Giessen 1914, 57 եւ ծանօթ. 1։

12 Ազգագր. Հանդէս, Ա. 308, Բ. 178։

կը գրէ այս առթիւ. «Աւելի ուշ շրջաններուն Սրաոշան պաշտօնակից է Միհրին եւ Ռաշնուին, որոնք միասին կը կազմեն երկնային ատեան մը՝ մեռելները դատելու համար։ Միհր եւ Ռաշնու, երկու եղբայրները, դատ կը վարեն՝ նստած Սրաոշային հետ, որոնք Գաթասի մէջ չեն յիշատակուիր, բայց յիշատակութիւն մը կ'ըլլայ Սրաոշայի գալուստի մասին, իբրեւ հոգեդատ, հատուցանելու համար բարի ու չար գործողներուն[13]»։ Եթէ ուրեմն Սրաոշա Աւեստայի հնագոյն մասին՝ Գաթասի մէջ իբրեւ մեռելներու դատաւոր առանձին երեւան կու գայ՝ Պահլաւեան շրջանին այդ պաշտօնը կը կատարէ լոկ իբրեւ Ռաշնուի ընկեր՝ Միհրի նախագահութեան տակ[14]։

Դարձեալ — որ մեզի համար կարեւորագոյն է — Սրաոշա հոգեառն էր որ բարի ննջեցեալներու հոգիները Չինուարի կամուրջը՝ առանձնական դատաստանի կ'առաջնորդէր։ Փարսերու գաղափարով մեռելին հոգին մահէն վերջ, առաջին երեք օրերը դիակին քով կը նստի[15]։ Սադդարի մէջ հոգին այդ վիճակի մէջ՝ տղու մը կը նմանցուի, որ իրեն համար որոշուած տեղւոյն ճամբան չի գիտեր[16]։ «Այսպիսի նեղ պարագայի մէջ Սրոշ մանկաբարձի դեր ունի[17]»։ Եթէ մարդը իր կեանքին մէջ Սրոշի պատուոյն եւ իւր հոգւոյն փրկութեան համար «երեք — գիշերներու — արարողութիւնը» կատարած է՝ հրեշտակը զինքը պիտի պաշտպանէ դեւերու յարձակումներու դէմ եւ այդ օրերուն զինքը մինակ պիտի չթողու[18]։ Չորրորդ օրը ծագելուն՝ Սրաոշա, հակառակ չար ոգիներու անզօր ճիգերուն՝ հոգին Չինուատ կամուրջը կ'առաջնորդէ[19]։ Իսկ չարերուն հոգիները ո՞վ դատաստանի կ'առաջնորդէ։ Söderblom կ'ապահովցնէ. «Անտարակոյս հոգիները, սկզբնաբար, միեւնոյն առաջնորդն ունէին, բայց մենք այդ մասին բան մը չենք գիտեր։ Բարիներուն համար այս պաշտօնը Սրաոշան կը կատարէր[20]»։

Եթէ իրանեանց յետնախօսական տեսութիւնները Հայոց ժողովրդական տեսութիւններուն հետ համեմատուին՝ էական կէտերու մէջ իրարու հետ կը համաձայնին։ Ամէնէն առաջ հայ խօսակցութեանց մէջ սա հաւատքը գրեթէ ամէն տեղ տարածուած է թէ մարդուն մահէն վերջ՝ հոգին դեռ քանի մը օր դիակին մօտ կը մնայ[21]։ Այդ մնալուն տեւողութիւնը յաճախ կը ճշդուի մինչեւ թաղումը[22]։ Կան նաեւ երեք օրերը[23]։ Նոյն ըմբռնումն ունին նաեւ մահմետական Պարսիկները[24], եւ ատկէ զատ բազմաթիւ ժողովուրդներ[25]։ Թէ այս ժողովուրդներու քով իրանեան ազդեցութիւնը ո՞ր չափով կրնայ ընդունուիլ՝ հոս պիտի չքննենք։ Նոր-պարսիկ ժողովրդական հաւատքի համար ան կրնայ ենթադրուիլ. նոյնպէս այս ըմբռնումները, Հայերէն զատ, Առաջաւոր-Ասիոյ միւս ժողովուրդներու, օրինակ՝ կովկասեան Խեւսուրներու քով կրնան իրանեան ազդեցութիւն համարուիլ[26]։ Իրանեան ազդեցութիւն կրնայ գուշակուիլ նաեւ Ռուսներու եւ Ռումէններու քով, քանի որ այս երկու ժողովուրդները — ինչպէս ուրիշ տեղ պիտի ապացուցուի — բազմաթիւ տարրներ ընդունած են իրենց ժողովրդական հաւատքի մէջ իրանեան դիցաբանութենէն[27]։

Ինչպէս որ մահէն անմիջապէս վերջ հոգւոյն կայանի մասին Իրանի եւ Հայոց տեսութիւններու մէջ համաձայնութիւն կայ, նոյնը գոյութիւն ունի նաեւ անոր (հոգւոյն) դէպի անդին ըրած ճամբորդութեան մասին։ Գրող, յետոյ Գաբրիէլ, հոգեառի պաշտօն կը կատարէ։ Սակայն այս հաւատքը եղանակաւորում կամ լրացում ստացած է եւ այն Իսլամի ազդեցութեան տակ։ Քանի մը հայկական աւանդութիւններու համեմատ՝ հոգին դէպի անդենական ըրած ճամբորդութեան ժամանակ, երկու հրեշտակէ կ'առաջնորդուի, որոնք

[13] Yasna 43, 12. M. N. Dhalla: Zoroastrian Theology. New York 1914, 41.

[14] Dadistan in Denik 14, 4. 28, 5. Menuk i Khrat 2, 118.Dhalla, 239.

[15] Dadistan XX. Mino Kherad IV, 9; XVII, 6. Gorvala in Spiegel Memorial Volume. Bombay 1908, 108.

[16] Saddar LVIII, 6—7. Gorval, 110.

[17] Zindahravan. Gorvala 1. c.

[18] Saddar LVIII, 4, 7. Šayast la Šayast 17, 3. Dhalla, 239. կամ N. Söderblom: La vie future d'après le mazdeisme. Փարիս 1901, 92.

[19] Grand Bundahiš XXII, 611. Söderblom, 93.

[20] Söderblom, 92, 132.

[21] Ազգ. Հանդ. ԺԲ. 211, 217։

[22] Անդ՝ Ա. 317, Բ. 185։

[23] Սամուէլեան, Ազգ. Հանդ. ԺԲ. 217։

[24] Donalson, անդ՝ 71.

[25] Scheftelowitz, անդ՝ 178.

[26] G. Nioradze, Begräbnis u. Totenkult b. d. Chewsuren. Stuttgart 1931, 17.

[27] Fr. Haase: Volksglaube u. Brauchtum d. Ostslaven. Breslau 1939, 303. A. Flachs: Rumän-Hochzeits- und Totengebräuche. Berlin 1899. B. Stern: Medizin, Aberglaube u. Geschlechtsleben in der Türkei. Berlin 1903, 281.

*կեանքի մէջ աջ ու ձախ ուսերուն վրայ նստած էին, որոնք կենդանութեան ատեն մարդուն գործած բարի ու չար գործերը գրի անցուցած էին եւ յաճախ պահապան հրեշտակ կամ Գրող կը յորջորջուին: Չար հրեշտակը, ճամբան, օգնութեամբ ուրիշ չար ոգիներու՝ բարի հոգիին վրայ կը յարձակի եւ կ'ուզէ զայն իր իշխանութեան ենթարկել, սակայն բարի հրեշտակը կրակէ սուրով կը դիմադրէ անոնց եւ հոգին կը պաշտպանէ*[28]*: Այս տեսութիւնը անո՛վ իրանեան է որ կը պատկերացնէ երկինք ճամբորդելու ժամանակ հոգւոյն ենթարկուած չար ոգիներու յարձակումները եւ՝ ինչպէս վերը յիշատակուեցաւ՝ չար ոգիներու կը դիմադրէ Սրոշ: Ընդհակառակն՝ Իսլամէ՛ն (Սուրա* 50) *է ծագումը ուսերու վրայ երկու հրեշտակներու գաղափարին, որոնք մարդկան գործերը գրի կ'անցնեն: Մահմետական Պարսիկներու քով ուսերու վրայի երկու հրեշտակները — Րագիբ եւ Ատիդ — Հայոց քով*[29] *եղածներու պաշտօնը ունին: Մահմետական տեսութենէն ազդուած՝* Գրող–գրիչ կոչումը յետոյ նաեւ Սրոշի ժողովրդական ստուգաբանութեան մէկ ձեւը եղած է, *բան մը, որ դիւրաւ տեղի կրնար ունենալ երկուքին լեզուական նմանութեան պատճառաւ. անձնաւոր Սրոշէն՝ անձնաւոր գրիչը եղած է, յետոյ նոյն իսկ բազմաթիւ (գրիչներ): Ստոյգ կարելի է համարել թէ Գրողի դէմքը նախիսլամական է, նոյնպէս միւս յետնախօսական տեսութիւններու կորիզը նախաքրիստոնէական ծագում ունի:*

*Ինչպէս որ ցարդ հայ ժողովրդական հաւատքէն յառաջ բերուած մանրամասնութիւնները իրենց էական կէտերուն մէջ պարսկական անդրշիրիմեան տեսութիւններուն կը համապատասխանեն՝ նոյնպէս ալ հոգւոյ դատաստանի տեսութիւնը՝ երկնքի դրան առջեւ: Աբեղեան եւ ուրիշներ*[30] *ընդարձակօրէն խօսած են ասոնց վերաբերեալ հայ եւ իրանեան տեսութիւններու միջեւ եղած սերտ աղերսի մասին: Հոս լոկ կ'ուզենք ակնարկել թէ մարդուն գործերը թէ՛ Հայոց եւ թէ՛ Պարսից քով արդարութեան կշիռքին վրայ կը կշռուին, որմէ վերջ հոգին դատաւորաց կամուրջէն կ'անցնի եւ իր գործերուն համեմատ դրախտը կ'երթայ կամ դժոխք (պահլ.* դոշախուի) *կ'իյնայ վարձատրուելու կամ պատժուելու համար — մանրամասնութիւններ, որոնք Իրանեանց կողմէ հոգւոյ դատաստանի նկարագրութեան ճշգրտօրէն կը համապատասխանեն*[31]*. միայն թէ մազի կամուրջի, իրանա–հայ դատաւորներու կամուրջի դատաստանը՝ Հայոց քով փոխանակ առանձնական դատաստանի՝ ընդհանրական դատաստանի ժամանակ տեղի կ'ունենայ*[32]*: Բնականաբար տարաձայնութիւն գոյութիւն ունի նաեւ հոգիներու դատաւորի մասին: Եթէ Իրանեանց քով Միհրն է գլխաւոր դատաւորը, քրիստոնեայ Հայոց քով Քրիստոս է, որ ծագող արեւուն վրայ դրած է իր գահը*[33]*:*

*Սրոշ–Գրողի նոյնութեան հարցը մոյթ կը գտնէ նաեւ ուրիշ՝ Ալիշանէն ու Չերազէն դժբախտաբար շատ համառօտիւ գծուած դէմքով մը, այն է՝* Շուտիկը: *«Շուտիկ Յոնիայի Հայոց համար այն է, ինչ որ միւս Հայոց համար Գրողն է: Սա անոնց քով կ'արթնցնէ գաղափարը աստուածութեան մը Գրողէն աւելի՛ չոյտ եւ նուազ զզուելի*[34]*»: Ալիշան կ'աւելցնէ թէ Շուտիկ անունը հին բժշկական գրքերու մէջ «մահ» բառով կը ներկայացուի*[35]*: Թէեւ այս համառօտութեան մէջ կարելի չէ Շուտիկի մանրամասն գծերն ու գործերը խոշորացոյցի տակ դնել — ո՛չ Չերազ եւ ոչ ալ Ալիշան աղբիւր յիշած են — սակայն կարելի է, առանց մասնաւոր մտահոգութեան, այս պատկերը Գրողի քով զետեղել: Իսկ ինչ կը հայի Շուտիկ անուան՝ ան քիչ մը կը նմանի հին արաբական Սուրուշ–Սերուշ անունին:*

*Ուշադրաւ է ի վերջոյ այն պարագան որ հայ ժողովրդական հաւատքի մէջ Գաբրիէլ հրեշտակապետը յաճախ Գրողի տեղը կը բռնէ: Այս փոխանակութիւնը Փոքր–Ասիոյ կրօնքներուն համար կրնայ նշանակական համարուիլ: Հին արաբական աղբիւրներու մէջ Սրոշ՝ Սուրուշ–Սերուշ անունի տակ կ'ապրի:*

---

[28] Ազգ. Հանդէս, *Ա.*, 318, 336. *Բ.* 186:

[29] Donaldson, *անդ՝ էջ* 79, 81:

[30] *Աբեղեան, անդ՝ էջ* 19: — Wilhelm, *անդ՝ էջ* 71:

[31] Ազգ. Հանդէս, *Բ.* 186. *Ա.* 318. *Դ.* 403: — *Աբեղեան, Ա. գլ.*: — Söderblom, *անդ՝ էջ* 92: — H. Hübschmann, *Հայ Քեր.*, *էջ* 142: — *Դատական կամուրջը՝ շատ մը ժողովուրդներու քով մահմետական ժառանգութիւն է*: — Scheftelowitz, *անդ՝ էջ* 180: — G. Nioradze, *անդ՝ էջ* 11:

[32] Ազգ. Հանդ., *Ա.* 319, 336:

[33] *Ե. Լալայեան, Ջաւախքի Բուրմունք. Թիֆլիս* 1892, *էջ* 12: — *Աբեղեան, անդ՝ էջ* 19:

[34] *Չերազ, անդ՝ էջ* 266:

[35] *Ալիշան, անդ՝ էջ* 84:

*Սուրուշ–Սերուշ կամ Ճեպրայիլ (Գաբրիէլ) կ'իշխէ կամ կը մարտնչի մոգերուն ու դեւերուն (ճին) հետ: Խաւարն ու ցուրտ հովերը կը փարատէ, կը մաքրէ աղբիւրները, կ'արթնցնէ աքաղաղները ու կը մղէ անասունները զուգաւորումի*[36], — *պաշտօններ, որոնք Պարսից քով ալ աւելի կամ պակաս Սրոշին կը վերագրուին (այս մասին այլուր): Այսօրուան Մանդէններու, այսինքն Միջագետքի եւ Իրանի բազմաթիւ իրանեան տարրներով մկրտչական աղանդաւորներու մասին կը հաւաստէ* Drower *թէ «Գաբրիէլ եւ Գաուրիիլ Իշլինա ճշգրտօրէն կը համապատասխանեն Զրադաշտական Սրաոշայի*[37]: *Այս նմանութիւնը նաեւ իբրեւ հոգետար երեւան կու գայ այն պարագայէն որ այս աղանդաւորները Պարսիկներու պէս «Սրաոշայի արարողութիւնը կը կատարեն, ինչպէս կեանքի մէջ, նոյնպէս մահէն վերջ (այս արարողութիւնը կը կատարեն՝ հոգիի վերելքին օգնելու համար)*[38]»: *Հին մանդէեան աղբիւրներու մէջ Սաուրիէլի (Գաբրիէլ) քով կայ նաեւ Պաոնանկա (պարս. պատգամաւոր), բառ մը՝ որ սկզբնաբար Սրաոշայի համար կաղապարուած էր*[39]:

*Ամէն դէպքի մէջ շատ հաւանական է որ Գրող աղերսի մէջ է Սրաոշա–Սրոշի հետ**:

Dr. Joh. Hambroer, Wien.

Թարգմ. Հ. Ե. ՊՕՂՈՍԵԱՆ

---

[36] Decourdemanch *ի գիրս* Revue des Traditions populaires, Paris 1908, XXIII, 210.

[37] E. S. Drower, The Mandeans of Iraq and Iran. Oxford 1937, 203.

[38] Drower, *անդ՝* 223: *Աւ այդ* W. Brandt, Die mandäische Religion. Leipzig 1889, 82.

[39] Brandt, *անդ՝* 73.

* *Գրող առաջին անգամ կը յիշուի Ֆրիկէն (էջ* 293).

*Ցորժամ մահն մօտենայ ու գրողն գայ,*
*Ոչ ի ծեր կու խնայէ, ոչ ի մանուկ, ոչ յերեխայ...*

*Նոյնը ունի նաեւ Պլուզ վարդապետ «Երկուս ի մէկ տեղ բերած» տաղին մէջ (անդ, էջ* 506):

*Աշխարհս է կանանչ մարգեր,*
*մեք ի մէջն ենք կաքաւ ձագեր,*
*Գրողն է եղեր բազայ,*
*կու կլլէ մէկ մէկ դար ի վեր:*

*Ուրիշ մը՝ «Ես աչք եմ դու հողի» տաղին մէջ (ան*,, 528).

*Այն քաղաքն, որ դու մըտնես,*
*Գրողի ձայնիկ չի հասնի:*
*Ֆրիկ այլուր գրած է (էջ* 482).
*Գաբրիէլն երբ խնդիր կու գայ*
*հիւանդին լեզուն կու կապի:*

# ՅՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՆԻԿՈՍԻԱՅԻ Ի ԿԻՊՐՈՍ

## (ԱՅԺՄ ՓՈԽԱԴՐՈՒԱԾ ԱՆԹԻԼԻԱՍ, ԿԱԹՈՂԻԿՈՍԱՐԱՆ)

*Հին է հայ գաղթականութեան սկզբնաւորութիւնը Կիպրոս կղզւոյն վրայ: Գաղթականներու թիւը դարերու ընթացքին, մինչեւ մեր օրերը, կրած է մակընթացութիւն եւ տեղատուութիւն փոխն ի փոխն: Գաղթականները հաստատուած էին կղզւոյն այլ եւ այլ կէտերու վրայ: Ունէին անոնք իրենց եպիսկոպոսը, որուն աթոռանիստն էր, հաւանօրէն ի սկզբանէ հետէ, Նիկոսիա (Լեւքօշա, Լաւքօշա,* Lewkosia)*. ԺԴ. դարուն ընտիր դաս մը գաղթականներու կը յիշուի ի Մագուսա (Ֆամագուստա), Կանչուոր Ս. Աստուածածին եկեղեցւոյ հովանւոյն տակ, որ «վանք» ալ կ'անուանուի: ԺԶ. դարու կէսին ձեռք բերին Հայերը Ս. Մակարի վանքը, որ յառաջ Ղպտիներուն կը պատկանէր:*

*Կը սպասուէր, որ այս գաղթականութիւնը պահպանած ըլլար իր ծոցը իր բազմադարեան կեանքէն յուշարձաններ, մշակոյթի հետքեր: Ինչ որ հասած է մեզի, շատ աղքատ է թուով: Անհետացած են հին ընտանիքները, կա՛մ ձուլմամբ տեղացի ժողովուրդներու հետ եւ կամ արտագաղթով: Արտագաղթած են նաեւ գրաւոր յիշատակարանները ըստ մեծի մասին: Իբր* 70 *ձեռագիրներէն, որոնք մնացած են հոն, հազիւ հինգը տեղւոյն վրայ գրուած են: Բայց կը գտնենք կղզիէն դուրս, այլ եւ այլ ձեռագրական հաւաքումներու մէջ ոչ խոտելի թիւ մը գրչագիրներու, որոնք Կիպրոս գրուած են:*

*Կիպրոս կղզւոյն եւ հայ գաղութի պատմութեան համար տեսնել՝*

1. *Բակուրան (Վահան Մ. Քիւրքճեան), Կիպրոս կղզի, Նիկոսիա* 1903, *էջք* 122:

2. *Արշակ Ալպօյաճեան, Կիպրոս կղզին. իր անցեալն ու ներկան. Թէոդիկ, Ամենուն տարեցոյցը,* 1927 *(Պարիս), էջ* 192—254:

3. *Բակ (Բաբգէն Ա. կաթողիկոս Կիւլէսէրեան), Հայ Կիպրոս. Հայ գաղութը եւ Ս. Մակար, Անթիլիաս* 1936, *էջք ԺԶ* + 272:

4. *Հ. Ն. Ակինեան, Հայ Կիպրոս, Հանդէս Ամսօրեայ,* 1937, *էջ* 378—381:

*Կիպրոսի ձեռագիրները* 1920*էն յառաջ երկու խումբով կը պահուէին Նիկոսիայի Առաջնորդարանին եւ Ս. Մակարի վանքին*

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՎԱԹՍՈՒՆՈՒՈՒԹԵՐՈՐԴ ՏԱՐԻ

**1954**

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Achtundsechzigster Jahrgang

**1954**

Wien

Mechitharisten - Buchdruckerei

(ծը·) Կցուրդ· Աւրհնեալ որ ետ զմարմինն իւր ի քաւութիւն ամենայն հաւատացելոց: Կարեւք մատիցուք, եղբարք առ մարմին(ս) այս... (Թղ· 277բ· տպ· 132):

(ծթ·) Կցուրդ: Աւրհնեալ որ եկն ի լրումն խորհրդոց իւրոց: Սրբեսցուք զանձինս մեր, սիրելիք, եւ մատեցուք առ հացն կենաց... (Թղ· 279ա):

(ի)· Կցուրդ: Աւրհնեալ որ դրոշմեաց արեամբ զհարսն զոր ստացաւ: Զի ցանեցին հեթանոսք զարիւնն անասնոց առաջի որթուց... (Թղ· 282ա· տպ· 136): Վջ· Եթէ աւրինակ անիծեալ աւձին կեանս ետ մարմնոյ, մարմին եւ արիւն աւրհնելոյն քանի եւս տայցէ հոգւոյ:

Ձեռագրին մէջ Թղ· 268բ «զի կորոյս զտ[իս]» ունի իր շարունակութիւնն Թղ· 273ա· «տունս լռդկի իւրոյ» մինչեւ Թղ· 276բ· ուր «որ ընդ նմա էին, զխարդ» կը գտնէ իր շարունակութիւնը 268բ [ևս ազգին իւրոյ յ]«անաւրինէր սպանանել ի նանիր...»: Իսկ Թէ Թղ· 273ա «հեթանոսաց չինեցաւ եկեղ(եց)ի» ունի իր շարունակութիւնը Թղ· 277ա «յոր տեղի ժողով է աղաւթից...»:

Ձեռագիրս ըստ մասնէ կը լրացնէ Էջմիածնի Թ· 821· միակ ձեռագրին սկիզբն եւ մէջերը ինկած թուղթերն եւ ետեւառաջութիւններն թղթերու: Այս միակ օրինակէն արտագրուած են Վենետիկի Մխիթարեանց ձեռագիրը, եւ Վիեննայի Մխիթարեանց Թ· 257, Թղ· 51ա—87բ: Էջմիածնի այս օրինակը կը սկսի ԺԶ· Կցուրդէն, ուստի առաջին Ա—ԺԵ ինկած են: Վենետիկի օրինակէն հրատարակեց այս պակասաւոր Կցուրդքը Հ· Գ· Սարգսեան, Ս· Եփրեմի Խուրին Ասորւոյ Կցուրդք, Վենետիկ 1934: Ա—ԺԵ Կցուրդները տպագրուեցան Ուսումնաթերթիս մէջ, 1953, էջ 481—522· 1954, էջ 257—283· 449—465:

49· Թղ· 283ա—299բ· Սուրբ վարդապետին Գրիգորի Սկեւռացոյն է ասացեալ Աղաւթքս: Աստուած բարձեալ ահաւոր անքննին, Աստուած իմանալին...: Վերջին թերթի՝ թուղթեր ինկած ըլլալով· այժմ կ'աւարտի· «եւ որք իբր նպաստաւոր ի քում մեծութենէդ ի մեզ ինչ պտղաբեր |||:

= Գիրք աղօթից Գրիգորի Սկեւռացւոյ. Կ· Պոլիս 1742, էջ 154—187:

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ· Ձեռագրիս վերջին թղթեր ինկած ըլլալուն պատճառաւ կը պակսի բուն Յիշատակարանը: 1· Թղ· 10բ· կար «Մաթոսի ասացեալ ի Գալուստ Քրիստոսի» ոտանաւորը, որուն վերջը· Թղ· 14բ· կ'ըսուէր· «աւրհնեալ եղբայր յիշեա զգրողս»: Թերեւս սա ըլլայ Ձեռագրիս գրիչը: 2· Թղ· 35ա· Ո աստուածասէր եղբարք, զԳրիգոր եւ զծնողսն իմ յիշեսջիք ի սուրբ եւ ՚յաստուածընդալ յաղաւթս ձեր եւ Աստուած զձեզ յիշէ:

Հ· Ն· ԱԿԻՆԵԱՆ

---

# ԻՐԱՆԵԱՆ ՏԱՐՐԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԻՆ ՄԷՋ

## Բ·

«Հանդէս Ամսօրեայ»ի նախորդ տարւոյն* մէջ հայ ժողովրդական հաւատքի դիցաբանական մէկ դէմքին վրայ խօսուեցաւ, որ Զրադաշտական կրօնքի մէջ գերագանց նշանակութիւն ունեցած, Հայոց քով հաւանօրէն Կրող անունով ապրած եւ ատկէ զատ՝ ինչպէս ուրիշ տեղ պիտի ապացուցուի՝ ուրիշ ժողովուրդներու քով ալ յայտնի հետքեր թողած է· ըսել կ'ուզենք Սրաոշա (պահլ· Սրոշ), եօթը «հրեշտակապետներէն» (ամպահսպանդ) մին, իրանեան հոգեառը եւ Միհրին ու Ռաշնուին հետ առանձնական դատաստանի հոգեդատը: Սակայն պարսկական պահապան ոգին լոկ հոգեառ ու հոգեդատ չէ, այլ յետնագոյն Աւեստայի մէջ եւ Պահլաւեան շրջանին՝ աւելի դիւահալած է եւ այս յատկութեամբ իրեն օգնական ու դաշնակից ունի շունն ու աքաղաղը[1]:

### 2· ԵՐԿՆԱՅԻՆ ԱՔԱՂԱՂԸ — ՊԱՐՈԴԱՐՇ

Սրաոշային դաշնակից համարուած բոլոր աքաղաղներուն մէջ դիցաբանական երկնային աքաղաղը՝ Պարոդարշ (=«այն որ ամէնէն առաջ կը տեսնէ») Իրանեաններու քով մասնաւոր տեղ մը կը գրաւէ: Զարմանալի չէ, հետեւաբար, եթէ անոր մասին յիշողութիւններ պահուած ըլլան Հայոց եւ ուրիշ ժողովուրդներու ժողովրդական հաւատքին մէջ ալ, ազդեցութեամբ Իրանեանց, սա՛

---

* Հանդ· Ամս· 1953, էջ 196—205:

[1] Bund, 19, 33. Հմմտ· M. N. Dhalla: Zoroastrian Theology, New York 1914, 238.

տարբերութեամբ որ անոր յիշատակները (Reminiszenz) աւելի՝ բազմաթիւ եւ աւելի որոշ են, քան Սրաոշայինը, որ ժողովրդական աւանդութեան մէջ հո՛ն ալ գրեթէ բոլորովին աներեւութացած է, ուր երկնային աքաղաղը ժողովուրդին երեւակայութիւնը դեռ կը զբաղցնէ: Ցայտնի է որ երկնային զարթուցիչի մը բանաստեղծական դիքը, որուն երկրային օրինակները (պատկերները) ամէն օր ժողովուրդին աչքին առջեւն են՝ յատուկ ձգողականութիւն մ'ունեցած է ժողովրդական երեւակայութեան վրայ: Սակայն յաջորդիւ տեսնենք նախ Սրաոշայի եւ իր առընթերակայ Պարոդարշի ինքնապաշտպանութեան դերի մասին քանի մը անհրաժեշտ նախագիտելիքներ:

Սրաօշա՝ բոլոր ժամանակներու Պարսիկներուն համար անպարտելի դիւցազն էր, որ դեւերը կը վախցնէ ու կը սարսափեցնէ, անքուն հսկիչը գիշերուան, տեւականօրէն մարտնչումի մէջ խաւարի իշխանութիւններու դէմ[2]: Ան կը պաշտպանէ ու կը պահէ աշխարհը արեւամարէն — ժամանակ՝ երբ դեւերը դուս կու գան — մինչեւ արեւու ծագումը՝ մարտնչելով Եշմայի, իր մեծագոյն թշնամւոյն եւ դիւական Դրուժի դէմ[3]: Գիշերուան երրորդ մասին կ'արթնցնէ նա իր դաշնակիցը՝ Պարոդարշ աքաղաղը բարձրացնելու իր ձայնը՝ զգուշացնելու համար աշխարհը Բուսհիանստա դեւուհիին դէմ, որ կը ջանայ աշխարհը քունի մէջ պահել[4]: Վէնդիդադ ԺԸ, 15—16 Զարաթուստրայի հարցումին թէ՝ ո՞վ է դեւերը զարհուրեցնողը՝՝ կը պատասխանէ Ահուրա-Մազդա. «Այն թռչունը, որ Պարոդարշ (աքաղաղ) կը կոչուի, ո՛վ Սպիտամա Զարաթուստրա, զոր չարախօս մարդիկ Կահրկատաս (կուկուլիկու) կը կոչեն: Ու այս թռչունը՝ աճող արշալոյսին՝ կը բարձրացնէ իր ձայնը. Ոտքի՛ ելէք, մարդիկ, գովեցէ՛ք լաւագոյն Ասհաճ, անիծեցէ՛ք դեւերը: Այն Բուսհիանստան, երկայն թաթերով, ձեզի կու գայ — ա՛ն է որ, երբ աստղերը կ'արթննան (իրիկունը), ամբողջ աշխարհը մէկէն կը քնացնէ (ըսելով). «Ո՛վ մարդ, երկա՛ր քնացիր, ժամանակդ դեռ չէ անցած[5]»:

Երկնային աքաղաղի այս դերը ակնյայտնի է եւ մեկնութեանց կարօտ չէ: Ցիշատակելի պարագայ մը կայ սակայն. Իրանեան Պարոդարշը, որ աստուածաբանական գաղափարի մը արտայայտիչն է՝ Beneviste ի ըսածին համեմատ՝ կենդանի բարբառին մէջ թափանցած չըլլալուն՝ Նոր-Իրանեան գաւառաբարբառներու մէջ հետք մը ձգած չէ[6]:

Ռամկական Kahrkata ի եւ իր բազմաթիւ ձեւերուն (սանս. Krkvala, եաղդ. Karkevas-vautour, պահլ. Kärg, օսեթ. Kärk, եւ այլն[7] հակառակ՝ հայերէնի մէջ ալ, որքան գիտենք, Պարոդարշի մասին լեզուական հետք մը չէ մնացած: Բանաստեղծական Kahrkataն անո՛ր համար ուշադրութեան արժանի է՝ վասն զի մարդ կը փորձուի իրանեան ձեւ մը՝ հայերէն աքաղաղի հետ կապակցութեան մէջ դնելու: Թէեւ Աճառեան կ'ապահովցնէ թէ վերջինս նախահայերէն է իրեն ապացոյց կ'առնէ սա արմատականը — կէլ — կանչել, գոչել (սանս. Kalakala — գոչիւն, աղմուկ, յուն. καλέω, լատ. clamo եւ այլն) եւ գաւառ. — հայ. ախէկլոր (= աքաղաղ): Սակայն այս յարակցութիւնը հաւանականութենէ աւելի արժէք մը չունի, քանի որ սանս. Kalakala հնչաբանական օրէնքով (ա)քաղախաղա պիտի տար. Աճառեանէ ընդունուած կազմաւորումը (Kontraction) քաղքաղ > խաղաղ ենթադրական կը մնայ, իսկ կէլ (Kel) արմատ մը ախէլորի մէջ՝ տարակուսական է, քանի որ հնչաբանօրէն ախէղոր պիտի սպասուէր[7ա]: Դեռ կայ սա կարեւոր պարագան որ աքաղաղ՝ հին հայերէնի (գրաբար) մէջ աւելի հաւով կը բացատրուի եւ որ շատ մը բարդութեանց մէջ ալ կ'երեւայ, մինչ կը սպասուէր որ աքաղաղ գործածուած ըլլար (օրինակ՝ հաւախօս)[7բ]: Անկէ սակայն կը տեսնուի թէ հնա-

---

[2] Yasna 57, 17. Yašt 11, 12. Հմմտ. Dhalla, անդ, 102.

[3] Yasna 57, 10. Yašt 11, 10—11. Հմմտ. Dhalla, անդ:

[4] Հմմտ. Dhalla, անդ, 103.

[5] Թարգմանութիւն Geldnerի ի գիրս Avesta, Pahlavi and Ancient Persian Studies in Honour of Sanja. First Series. London 1904, 203—204.

[6] E. Bénéviste: Une différenciation de vocabulaire dans l'Avesta ի շարս „Studia Indo-Iranica". Հրտ. W. Wüst, Leipzig 1931, 219.

[7] Bénéviste t. c. W. Tomaschek: Central-asiatische Studien: Pamir-Dialekte. Wien 1880, 38.

[7ա] Հ. Աճառեան, Հայերէն Արմատական Բառարան, Երեւան 1935, 101:

[7բ] Անդ:

րաւոր է որ արական անասունը ցուցնող բառը՝ ձեւափոխուած իրանեան փոխառեալ բառ մ՚ըլլայ եւ այս իսկ պատճառով շատ տարածում չէ գտած։ Բացի Kahrkata — աքաղաղ նման ձայնաբանութենէն՝ այս ենթադրութիւնը աքաղաքի մասին հայ ժողովրդական հաւատքին ալ պիտի ապացուցուի։

Ինչպէս վարը պիտի ցուցուի՝ ոչ միայն հայ ժողովրդական հաւատքի երկնային աքաղաղը իրանեան դրոշմ կը կրէ, այլ եւ ուրիշ՝ աքաղաղի հետ կապ ունեցող տեսութիւններ յայտնի իրանեան նշաններ ունին իրենց վրայ։ Այսպէս՝ Պարոդարշ, «որ կը նախատեսէ»՝ երկրաւոր աքաղաղի կերպարանքի տակ՝ մարգարէական թռչուն կը համարուի։ Երբ հայ աւանդութեան մը համեմատ աքաղաղը կը տեսնէ՝ թէ ի՛նչպէս հոգէառը մահամերձի մը կ՚երթայ, նոյնպէս կայ ուրիշ հայ աւանդութիւն մը, որուն համեմատ լերան մը վրայ գտնուող վանքի մը մէջ, որ ութը ամիս ձիւնով ծածկուած ըլլալով՝ աշխարհէն անջատուած է՝ աքաղաղը «կը տեսնէ» թէ ե՛րբ վանքին ճամբան ձիւնէն ազատած կ՚ըլլայ[7գ]։

Շատ թարմ վերյիշումներ ալ պահուած են երկնային աքաղաղի գլխաւոր թշնամիի մասին, զզուելի ծերուկը՝ «երկայն թաթերով», քունի դեւը Բուսհիանսան, որ դեռ այսօր ալ հայ գիւղացիի երեւակայութիւնը կը տանջէ։ Ինչպէս տեսանք՝ քունը Իրանեանց քով դիւական երեւոյթ մը կը նկատուի եւ մահուան հետ կը նոյնացուի[8]։ Հայոց քով ալ աքաղաղը «գիշերային մեռելներու զարթուցիչն» է[8ա]։ Հայաստանի ուրիշ վայրերու մէջ մինչեւ անգամ քունի սեւ դեւի մը կը հաւատան, զոր աչքերի պարոճ կամ արապ «սեւ քուն» կը կոչեն[8բ]։

Հոս անցողակի յիշատակենք նաեւ որ երկրաւոր աքաղաղները, իբրեւ ներկայացուցիչներ նուիրական Պարոդարշի՝ թէ՛ Հայոց եւ թէ շատ մը ուրիշ ժողովուրդներու քով այսօր ալ դեռ դիւահալածներ կը նկատուին[9], եւ թէ մասնաւորապէս սպիտակ աքլորը, շատ մը ժողովուրդներու հաւատքով, երկրաւոր ներկայացուցիչն է երկնաւոր աքաղաղին, ըլլա՛յ իբրեւ քաւութեան զոհ զանազան լոյսախոյս խաժամուժի, ըլլա՛յ ուրիշ պատճառով՝ յաճախ մինչեւ այսօր մեծ յարգ կը վայելէ[10]։

Երկնային աքաղաղը հին արաբական եւ հին հրէական գրական աղբիւրներու մէջ երեւան կու գայ իր ամբողջական պայծառութեամբը[11]։ Իսկ ժողովրդական հաւատքի մէջ իր յիշատակութիւնները այնքան շատ չեն, ինչպէս սովորական աքաղաղի աւանդութիւնները՝ իբրեւ քաւութեան զոհ (Apotropäon) չար ոգիներու դէմ։ Հակառակ ատոր իրանեան դիցաբանութեան (Mythos) մնացորդները ժողովուրդներու աւանդութեանց մէջ պահուած են աւելի կամ պակաս պայծառութեամբ։

Որոշապէս ճանաչելի է երկնային կանչողը Հայոց քով։ Ժողովրդական աւանդութիւն մը կը հաղորդէ. «Արեւը Աստուծոյ աթոռն է։ Արեւածագին կը բացուին դրախտի դուները ու աքաղաղները, երբ կը լսեն բացուելու աղմուկը՝ կը կանչեն[12]»։ Հոս աքլորներու կանչը, Պարսկականին պէս, արեւու ծագումին հետ կապակցութեան մէջ կը դրուի, իսկ երկնային աքաղաղը չի յիշուիր, մինչդեռ ուրիշ տեղեկատուութեան մը մէջ ան որոշապէս կը յիշուի։ «Երբ գիշերը աքաղաղները կը կանչեն՝ մարդիկ խաչ կը հանեն ու կ՚ըսեն. Փառք Աստուծոյ, զի նախ երկնային աքաղաղը կանչեց եւ յետոյ ասոնք. կամ՝ մարդիկներու հրեշտակները, որոնք մարդկան քուն մտնելէն վերջ երկինք բարձրացած են՝ ետ կը դառնան եւ միայն աքաղաղները

[7գ] Ե. Լալայեան, Ջաւախք, Թիֆլիս, 212, 247։ Դկտ. Հ. Հ. Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքերը, Մասն Գ., Վիեննա 1947, էջ 888—889։

[8] Առաջին յօդուածը։

[8ա] Սրուանձտեանց, Մանանա, Կ. Պ. 1876, 319։ — Մ. Աբեղեան, Der armenische Volksglaube, Leipzig 1899, 38.

[8բ] Տէր-Աղեքսանդրեան, Թիֆլիզեցւոց մտաւոր կեանքը, Թիֆլիս 1886, 76։ — Աբեղեան, անդ, 32։

[9] Ազգագրական Հանդէս, I (Թիֆլիս 1896), 325. II (1897), 223։ — Լալայեան հոս նկատմամբ ուրիշ ժողովուրդներու՝ չափաւոր գրական աղբիւր ունի։ — Fehrle, Der Hahn im Aberglauben ի „Schweizer Archiv f. Volkskunde“, 1912, 65. — J. Scheftelowitz: Das stellvertretende Huhnopfer, Giessen 1914, 51. — Handwörterbuch d. deutschen Aberglaubens, Bd. III, 1340. — V. Klinger: Zivotnoe v antičnom i sovremennom seuvjernij ի թերթին Kievskaja Unveritetskaja Izvjestija, Kiev 1910/10, 267. 1911/3, 321, 326.

[10] B. A. Donaldson: The wild rue. A Study of Muhammedan Magic and Folklore, London 1938, 162. — Fehrle, անդ։ — Scheftelowitz, անդ, 49 եւ Register „Huhn, weißes“.

[11] Nau ի թերթին Journal Asiatique, CCXX (1929), 199, 214, 218.

[12] Հանդէս գրականական եւ պատմական, Ա. մաս, Մոսկուա 1888, 372։

տեսած են զանոնք[13]»: Ուրիշ աւանդութեան մը մէջ կ'ըսուի. «Աքաղաղը խոհեմ է. կը լսէ երկնային զանգին զարկը, թեւերը կը թափահարէ կը կանչէ[14]»: Թէ հոս երկնային աքաղաղը ամբողջացնելու է՝ յետոյ պիտի բացատրուի բուլղարական աւանդութեամբ մը:

Իրանեան խորհելակերպը, հին ատեն, Եւրոպայի եւ Ասիոյ բազմաթիւ ժողովուրդներու մէջ թափանցած է, եւ երկնային աքաղաղի մասին յայտնի վերյիշումներ մնացած են շատ մը ժողովուրդներու քով: Գերերկրային կանչողը (աքաղաղ) ուրիշ տեղերէ աւելի իր հայրենիքին, Պարսկաստանի մէջ է որ որոշապէս երեւան կու գայ: Արդէն այն պարագան որ ճերմակ աքաղաղը, դեռ այսօր ալ, Պարսիկներու քով հրեշտակ մը կը համարուի եւ ասոր համար թոյլ տրուած չէ սպաննել, զի անոր ներկայութիւնը լոկ պաշտպանութիւն է՝ կ'ապացուցանէ երկնային աքաղաղը: Սատանան չի կրնար մտնել տնէ մը ներս, ուր ճերմակ աքլոր մը կը պահուի. ախտներն անգամ փախուստ կու տան անկէ: Հետեւաբար ով որ այսպիսի աքլոր մը կը սատկեցնէ՝ չարիք մը պիտի գտնէ[16]:

Սպիտակ աքլորի մը առջեւէն փախչող ախտին պատմութիւնը ապահովաբար շատ հին է, վասն զի արաբական աղբիւրի մը ծանօթ է արդէն[17]: Նոյն անմիտ բանը կը վերագրուի նաեւ որեւէ աքաղաղի, հին յունական տնտեսագիտութեան մը մէջ. պատառիկի մը մէջ, որ սխալմամբ Զրադաշտի վերագրուած է, համակրական ու հակակրական միջոցներ կը գործածուին հելլենացած մազդեզական մոգերէ[18]: Պլինիոսի, Ելիանի եւ Լուկրետիոսի քով ալ աքլորները ախտածահալած եղած են: Սկզբնական բնագիրը

[13] Ազգ. Հանդ. II, 242:
[14] Ազգ. Հանդ. X, 246:
[15] Donaldson, անդ, 162. — H. Massé: Croyance et coutumes persanes. T. I, Paris 1938, 197; II, 51.
[16] Ebn Baithar, Heil- und Nahrungsmittel, aus d. Arab. übersetzt Sontheimer (1840), I, 47. — Fehrle, անդ, 69, ծանօթ. 1:
[17] Geoponica, XV, 1. Cf. — J. Bidez-Fr. Cumont: Les Mages hellénisées. Zoroástre, Ostanès et Histaspe d'après la tradition grecque. T. II, Paris 1938, 193, մանաւանդ 196, Թ. 4.
[18] Plinius: Hist. nat. X, 21: itaque terrori sunt (աքլորները) etiam leonibus, ferarum generasissimis. Aetian: De nat. anim. lib. III, cap. XXXI; lib. IV, cap. XXII. Gray in „Encyklopedia of Religions and Ethics“. T. III, 695.

սակայն հաւանօրէն սպիտակ աքաղաղ ունէր: Այս տեսութիւնը կ'ապացուցուի այն յարգանքով, զոր կը տածէին Պիւթագորեաններն այս «հրեշտակ»ին հանդէպ, այնու որ արգելք ունէին այս թռչունը սպաններու եւ միսը ուտելու[19]: Այս աւելորդապաշտութեան առիթ տուած էր անշուշտ նուիրական Պարոդարշը, որ Իրանեաններէն պայծառ — լուսաւոր գոյնով կ'ըմբռնուէր:

Այսպիսի աւանդութիւններով պարզ մատնանշուած երկնային աքաղաղը՝ այսօրուան Պարսիկներու ժողովրդական հաւատքին մէջ յայտնի եւ անուրանալի կերպով երեւան կու գայ: Donaldson անոր դէմքն ու նկարագրական դերը հետեւեալ կերպով կը գծէ. «Հրեշտակներէն մին սուրբ աքլոր մըն Է եւ կը բնակի Աստուծոյ գահին տակը, ուսկից չարունակ կը փառաբանէ Զինքը: Երբ ըսէ. Ya hai, ya Kaiyum — Ո՛վ դու կենդանիդ, ո՛վ դու յաւերժականդ — այն ատեն երկրի աքլորները զինքը կը լսեն եւ կը սկսին խօսիլ: Անոր թեւերը արեւելքէն մինչեւ Արեւմուտք կը հասնին եւ առտուան դէմ զանոնք կը թափահարէ, կը ցատկռտէ եւ յստակ ձայնով կը գոչէ «Փա՛ռք Աստուծոյ, փա՛ռք սուրբ Թագաւորին» ու իրեն նման կը ցատկռտեն, իրեն հետ միանալով կը գոչեն. «Փա՛ռք Աստուծոյ»[20]: Ինչպէս կը տեսնուի՝ այս դէմքը կը համապատասխանէ երկնային աքաղաղին եւ իր դերը՝ իր իրանեան նախատիպարին, դուրս հանելով հրեշտակի հետ նոյնացումը, որ հոս իսլամական ազդեցութեամբ յառաջ եկած է եւ մեզի ուրիշ տեղ ալ պիտի հանդիպի:

Երկնային աքաղաղի գրոյցը իրանէն դէպի արեւելք, մինչեւ Չինաստան տարածուած է: Ասոր ապացոյց է Չինացիներու յարգանքն ու մեծարանքը սպիտակ աքաղաղին, որ անոնց աւելորդապաշտութեան ու սովորութեանց մէջ նշանակալից դեր մը ունի[21]:

Աքաղաղի մասին ընդհանրապէս եւ երկնային աքաղաղի մասին մասնաւորապէս կ'ապահովցնէ De Groot. «Շատ հին ժամանակներէ ի վեր աքլորը արեւու ծանօթ խորհրդանիշն եղած է, որովհետեւ ամէն առ-

[19] Scheftelowitz, Huhnopfer, 49.
[20] Donaldson, անդ, 162.
[21] De Groot: The Religions System of China. Vol. I/I. Leyden 1892, 200.

տու օրուան աստուծոյն ծագումը կը յայտարարէ: Հինները մինչեւ իսկ զայն արեւուն հետ կը նոյնացնէին: ԺԱ. դարու հեղինակ մը կը պատմէ. Հին գրոյց մըն է թէ արեւուն մէջ աքլոր մը կայ, իսկ լուսնին մէջ նապաստակ մը»[22]:

Եթէ հոս երկնային աքաղաղը արեւու մէջ կը զետեղուի եւ կամ անոր հետ կը նոյնացուի — նմանութիւն մը ծագող արեւուն Պարոդարշին հետ — ուրիշ՝ չինական աւանդութեամբ մը ան աւելի մօտէն կը ճշդուի: Läufer կը գրէ այս մասին. «Անոնց (չինական) կարծիքով աքաղաղը արեւու խորհրդանիշն է, վասն զի արեւու ծագումը կը ծանուցանէ: Երկրաւոր աքաղաղէն զատ՝ կայ երկնային մ'ալ, որ ծառի մը վրայ թառած՝ արեւածագին կը կանչէ: Այդ ծառը՝ ուռին է, որ նոյնպէս արեւը կը խորհրդանշէ: Աքաղաղը երբեմն չինարէն կը կոչուի խիւ-նա, այսինքն՝ «աշխարհը լուսաւորողը», իսկ արեւը՝ ձի-ձի — «ոսկի աքաղաղը[23]»: Հոս իրանեան երկնային աքլորի արեգակնային գծերը որոշ կերպով կը նշմարուին: Հին Յոյներուն համար աքաղաղը «պարսկական թռչունն» էր[24]: Յունաց եւ Հռոմէացւոց քով ալ աքաղաղը արեւու հետ կը միացուէր մերթ Հեղիոսին, Ապողոնին կամ Սոլին քով դրուելով[25]. միեւնոյն կերպով ան ուրիշ ժողովուրդներու քով ալ արեւուն հետ աղերսի մէջ կը դրուի:

Դժուար չէ պատասխանել թէ իրանեան գրոյցը ի՞նչ ճամբով այդքան տարածուած է: Նախ պէտք է նկատի առնել որ դասական Իրանը իր 2,600·000 քառ. քիլոմ. տարածութեամբ մինչեւ Հնդկաստան եւ Հիմալայիա կը տարածուէր եւ աւելի մեծ գետին մը բռնած էր, քան այսօրուան Պարսկաստանը իր 1,650·000 քառ. քիլոմեթրով[26] եւ թէ միւս կողմէ այսօրուան Ռուս — Չին — Թուրքեստանի սահմանը արդէն քրիստոնէական թուականէն շատ առաջ իրանեան ցեղերէ բնակուած եւ իրանեան մշակոյթը հոգեկան — մշակութային կեանքին վրայ ազդած էր թէ՛ Չինաստանի եւ թէ՛ կեդրոնական Ասիոյ մէջ[27]:

Իրանեան գաղափարները կանուխէն մուտք գործած են նաեւ Սլաւներուն ու Ուգրոֆիններուն մէջ: Հոս միայն ակնարկենք որ Հարաւային Ռուսաստանը, հնութեան մէջ, իրանեան ժողովուրդներէ բնակուած էր եւ թէ Սլաւները Ք.Ե առաջ 500էն արդէն Իրանեան Սկիւթացիներու հետ շփման մէջ մտած եւ այս կապը քրիստոնէական թուականին ալ դեռ երկար ատեն պահած են[28]: Իսկ ինչ կը հայի Ուգրոֆիններուն՝ ստոյգ է որ Սամոյեդներուն բաժանումէն վերջ (իբր 2000 Ք.Ե առաջ), իբր 1600ի ատենները Ք.Ե առաջ, միջին Վոլգայի վրայ իրանեան ցեղերու հետ շփման մէջ մտած են եւ այս կապակցութիւնը Պերմիերներուն, Վոտեակներուն ու Սիւրյենաց հետ մինչեւ Գ.—Դ. դար Ք.Ե յետոյ շարունակուած է[29], այնպէս որ թէ՛ բազմաթիւ իրանեան բառեր մտած են ուգրոֆիննեան լեզուներու մէջ եւ թէ շատ մը իրանեան գրոյցներու հետքեր կը գտնուին սլաւական ու ֆիննօ-ուգրական ժողովրդական հաւատքի մէջ:

Նշանակալից է արդէն որ Սլաւներու հաւազգիներու վերաբերեալ բառը՝ պարսկերէն բառ մըն է: Ընդհանուր սլաւերէն Kuru բառը՝ ընդհանրապէս ընդունուած բառամեկնութեամբ մը՝ կը համեմատուի պարս. churus, churu, churuhի (վատյ., դիւրյ., օստյ. Kurek, վօգ. Kürek) հետ[30]: Ուգրոֆիննական ձեւերը՝ հակառակ լեզուական դժուարութիւններու, զորոնք կը

[22] De Groot, անդ, 199.

[23] B. Laufer: Prelimenary Notes on Exploration among Amoor Tribes in „American Anthropologist". T. II, New York 1900, 302.

[24] Gray: „Encyklopedia of Religions and Ethics". T. III, 695. — Scheftelowitz, Huhnopfer, 55.

[25] Անդ:

[26] Ch. Huart: La Perse antique et la civilisation iranienne, Paris 1925, 1.

[27] P. Pelliot: Les influences iraniennes en Asie centrale et en Extrême-Orient in „Revue d'Histoire et de Littérature Religieuses", T. III (Paris 1912), 104. — Ch. de Ujvavy: Les Aryens au Nord et au Sud de l'Hindous-Kouch. Paris 1896, 37, 113. — V. V. Bartold: Iran. Istoričeskyj Obzor. Taškent 1928, 13.

[28] L. Niederle: O puvodů slovanů. V. Praze 1896, 80. — Նաեւ Vasmer: Die alten Bevölkerungsverhältnisse Rußlands im Lichte der Sprachforschung. Berlin 1941, 14, 26, 59.

[29] Setälä, Suomen sukuisen esihistoria in „Suomen Suku". T. I, Helsingissä 1926, 150, 154, 181. — H. Jacolsohn: Arier und Urgrofinnen. Göttingen 1922, 4.

[30] Այսպէս՝ O. Schrader: Sprachvergleichung und Urgeschichte in Europa. 2. Տպագր. Jena 1920, 391. — A. Alquist: Culturwörter der westfinnischen Sprachen. Helsingfors 1875, 20.

մատնանշէ Berneker[31] իրանեան փոխառութիւն են, առանց տարակոյսի. վասն զի թէ Ուգրոֆիննները, որոնք Սլաւներէն շատ առաջ իրանեանց հետ շփումի մէջ մտած են, Ռուսներու միջոցաւ հաւերը ճանչցած եւ նշանակումներ ըրած են՝ ոչ ոք պիտի ուզէ լրջօրէն հաստատել:

Երկնային աքաղաղի յիշատակը ամէնէն աւելի Արեւելեան-Սլաւներու քով մնացած է: Հին ռուսերէն Golubinaja Knigaի մէջ — հոգեւոր խօսակցութեան հաւաքածոյ մը ԺԲ. դարու վերջերէն կամ ԺԳ. սկիզբէն — մնացած է Stratim (Strafil, Stripel) անունի տակ՝ հսկայ, ամբողջ աշխարհէն վեր բարձրացող աքլորի մը կերպարանքով: Աստուծոյ հրամանով այս գերերկրային աքաղաղը կէսգիշերի երկրորդ ժամուն շարժում մը կ'ընէ, որուն վրայ երկրաւոր աքլորներու կանչով արշալոյսը կը բացուի[32]:

Հոս երկնային աքաղաղը շատ լաւ կը համապատասխանէ իրանեան իր նախօրինակին, թէեւ Stratim, կերպարանքի մէջ բոլորովին բարդ է: Վերոյիշեալ աղբիւրին մէջ արդէն զանազան նշանակութիւն ունենալով՝ «այդ կերպարանքը զանազան տարրներէ բաղադրուած» է[33], որոնք զանազան դիցաբանական տեսութիւններու անդրադարձում ըլլալով՝ իրարմէ կը զանազանուին: Անունը իբրեւ այսպիսին՝ կը կապուի Strufokamilի հետ «ջայլեամ»ը սլաւերէնի դարձնելով[34] — նշանակում մը, որ յետոյ երկնային աքաղաղին ալ անցած է: Երկնային աքաղաղը ինքնին սակայն անտարակոյս հին է սլաւներու քով, աւելի հին՝ քան իր անունը:

Երկնային աքաղաղի տկար վերապրում մը այնո՛ւ մնացած է Ռուսներուն քով որ զանազան տեղեր աքաղաղը հրեշտակ մը կը համարուի. հրեշտակի աստիճան (angelski čin) կը տրուի անոր[35]: Թէ ատով իրանեան երկնային աքաղաղը կը մատնանշուի՝ կրնայ ստոյգ համարուիլ նաեւ անո՛ր համար որ այդ նոյնացումը ուրիշ ժողովուրդներու քով ալ տեղի կ'ունենայ: Նոր պարսկական զուգակշիռը (Parallele) տեսանք արդէն:

Աքլորը հրեշտակի մը հետ աղերսի մէջ կը դրուի նաեւ Ռումանիոյ ժողովրդական հաւատքին մէջ: Ռումանիոյ մէջ, ինչ ինչ տեղեր կը հաւատան թէ երբ աքաղաղը կէսգիշերին կանչելիք ըլլայ՝ հրեշտակ մը անոր աջ թեւէն կը քաշէ, ու երբ կը կանչէ՝ դեւերը փախուստի կը մատնուին[36] — շօշափելի զուգակշիռ մը Սրոշի հսկիչի դերին: Իր դաշնակիցը՝ երկնայինն Պարոդարշ՝ անշուշտ աւանդութեան հետ կորսուած է: Ռումանիոյ մէջ կը հաւատան թէ դեւը երբեք չի կրնար աքլորի մը կամ շան մը կերպարանքն առնել[37] — տեսութիւն մը, որ ամբողջապէս իրանեան է:

Ի՞նչ ճամբով Ռումանիա հասած է արեւելեան մտածելակերպ մը: Արեւելեան գաղութներ, որոնք Դակիայի հռոմէական շրջանին (Ք.է վերջ 107—270), մանաւանդ Տրայանոսի ատեն զանգուածօրէն հիմակուան Ռումանիա գաղթեցին՝ հարկաւ իրենց սեպհական կրօնական գրոյցները իրենց հետ իրենց նոր հայրենիքը բերին: Գիտենք թէ այս նորեկներուն մեծ մասը Փոքր-Ասիոյ նահանգներէն կը սերէր, որոնք հինէն ի վեր մազդեզական կրօնք ունէին, ինչպէս՝ Կապադովկիա, Գաղատիա, Բիւթանիա, Պափղագոնիա, Սուրիա եւ Կոմագենէ[38]: Զարմանալի չէ ուրեմն, որ Ռումանացիներուն քով ոչ միայն երկնային աքաղաղի յիշատակը մնացած է, այլ եւ ուրիշ բազմաթիւ իրանեան գրոյցներ ալ կը գտնուին ռումէն ժողովրդական հաւատքի մէջ. այսպէս նաեւ Սրաոշա կը գտնուի ռումէն ժողովրդական դիւաննուններու մէջ Scraoşeanu (Scaraoşeanu, Caraosti, եւն) ձեւով:

Հրեշտակ-աքաղաղ (Սրոշ-աքաղաղ) կազմութիւնը ուրիշ ձեւի մէջ մինչեւ այսօր պահուած է նաեւ Ուկրայններուն քով: Հոն կը հաւատան որ աքաղաղի թեւը հրեշտակի

---

31 E. Berneker: Slav.-etym. Wörterbuch. Heidelberg 1908—1913, 650: „Entlehnung aus iran. (Kurus) ist aus lautlichen Gründen nicht anzunehmen."

32 V. Varencov: Sbornik russkich duchovnych Stichov. St. Petersbung 1860, 26, 36.

33 Kipričnikov in Brokhaus-Efron: Encyklopediceskyj Slovar. T. IX, St. Petersburg 1893, 116.

34 Brokhaus-Efron, անդ.:

35 Haase, Volksglaube und Brauchtum der Ostslaven. Breslau 1939, 224.

36 Ch. Ciauseanu: Superstitiile poporulul român, Bucureşti 1914, 352.

37 Ciauseanu, անդ., 223, 336:

38 A. Ph. Phillipide: Originea Romanilor. T. I. Jasi 1935, 855. — Jung: Römer und Romäner in den Donauländern. 2. Aufl. Innsbruck 1887, 111. Արեւելեան պաշտամունքի, յատկապէս Միհրի պաշտօնին առաջին քրիստոնէական դարերէն ի վեր Առաջակողմեան Ասիոյ մէջ տարածուելու մասին տե՛ս Fr. Cumont: Les Réligions orientales dans les paganisme romain. 4. Ed. Paris 1929 passim.

թեւին մէկ փետուրը կը բովանդակէ, որով նա ատակ կ՚ըլլայ հրեշտակային երգը լսելու եւ անմիջապէս կանչելու[39]: Որովհետեւ երկնային աքաղաղը քրիստոնէական հրեշտակաց վարդապետութեան մէջ տեղ չունի՝ ի հարկէ պիտի ոչնչանար, որուն տեղ երկրաւոր աքաղաղները հրեշտակներու հետ կապակցութեան մէջ դրուած են: Թէ այս մեկնութիւնը ճիշդ է՝ կ՚ապացուցանեն Ուկրայններու ուրիշ տեսութիւնները աքաղաղի մասին: Այս մասին փոքր ապացոյց մ՚է այն պարագան որ անոնք աքաղաղը դիւահալած կը ճանչնան. աւելի մեծ ապացոյց է ա՛յն որ զայն «աշխարհազարթոյց» կը կոչեն (Budimir):[40]: Բայց դեռ աւելի յատկանշականը կայ:

Հետաքրքրական է Ուքրայններու «աքաղաղ–արքայ» (pjetuch carik) տեսութիւնը: Անոնք կը հաւատան թէ այս աքաղաղը կը ճանչցուի արդէն հաւկթի մէջ. հաւկթի մէջ կը ծուայ: Մեծնալէ յետոյ կ՚ուժովնայ ու յանդուգն կը դառնայ, որով ոչ միայն բոլոր աքլորները, այլ եւ սատանան կը վախնայ իրմէ: Կէսգիշերին ինքը ամէնէն առաջ կը կանչէ ու դեւը չի համարձակիր մտնել տուն մը, ուր «արքայ–աքաղաղ» մը կը պահուի. ատոր համար մեղք ու վնասակար է զայն սպաննել: Ուկրայնացի կառապաններ, երբ հեռաւոր ճամբայ մը պիտի կտրեն, միշտ այսպիսի «աքաղաղ–արքայ» մը իրենց ընկեր կ՚ընեն[41]:

«Աքաղաղ–արքայ» գաղափարը հաւանօրէն ծագում առած է գերերկրային աքաղաղի մը տեսիլքէն: Ռումէնները նման աւելորդապաշտութիւն մ՚ունին, որ աւելի որոշ կերպով երկնային աքաղաղը կը յիշեցնէ: Անոնք երկու կարգի կը բաժնեն երկրաւոր աքաղաղները. սովորական եւ «դերբնական» (nazdravani). վերջինները անոնք են որ ճիշդ կէսգիշերին կը կանչեն ու յետոյ ամէն մէկ ժամուն, տարբերութեամբ անոնց, որոնք «դերբնականի» կանչին կը միանան: Այս «դերբնական» աքաղաղները եւ միայն ատոնք կը լսեն հրեշտակներու երգը ու անմիջապէս կը կանչեն[42]: Երկնային աքաղաղի առանձնաշնորհեալ ներկայացուցիչները հոս աւելի ճանաչելի են, զի կրնայ ապահովաբար ընդունուիլ որ զարթուցանող հրեշտակին տեղը՝ հրեշտակային երգը բռնած է եւ թէ քրիստոնէական աստուածաբանութեան հետ չհաշտուող երկնային աքաղաղի տեղը՝ «դերբնական» երկրային աքաղաղները կը բռնեն: Ինչպէս Ուկրանացիներու «աքաղաղ–արքան»՝ նոյնպէս ալ Ռումանացիներու «դերբնական» աքաղաղները առանց պատժի կարելի չէ սպաննել[43]: Ռումէն ժողովրդական հաւատքը որոշ չափով մը կը նմանի Աւեստայի Պարսիկներու ըմբռնողութեան հետ, որոնց համեմատ Սրաոշա Պարոդարշի հետ գիշերը երեք անգամ դեւերու յարձակմանց կը դիմադրէ[44]: Այս գրոյցին յայտնի մնացորդն է Ռումէններու քով այն որ՝ ատոնք գիշերուան շրջանը — շրջան դեւերու իշխանութեան — կէսգիշերէն սկսած՝ աքաղաղի առաջին կանչէն վերջ՝ երեք ժամանակաշրջանի կը բաժնեն[45]: Ուրեմն Ռումէններու քով երկնային աքաղաղի տեղը կը բռնեն «գերերկրային» աքաղաղները, որոնք Պարոդարշի պէս կը հսկեն:

Ինչ կը հայի Ուկրայիններու՝ անոնց ալ ծանօթ է Չինաց արեգակնային ըմբռնողութիւնը (Version): Ուկրայնական հանելուկի մը մէջ արեւը աքաղաղի մը հետ կը համեմատուի, որ ունենայ ծառի մը վրայ նստած՝ իր մազերը (արեւու ճառագայթները) երկրի վրայ կը տարածէ[46]: Թէ հոս երկնային աքաղաղը կ՚ակնարկուի՝ կարելի չէ տարակուսիլ: Աչքի կը զարնէ չինական ըմբռնողութեան հետ համաձայնութիւնը ուրին՝ արեւային ծառ ըմբռնումի մէջ: Իսկ այն քննադատներու համար, որոնք երկնային աքաղաղի արեւային ըմբռնողութեան բնագրոյցի մեկնութիւն տալ կ՚ուզեն՝ կը ներկայացնենք Ուկրայիններու յաջորդ ամենապարզ աւանդութիւնը. «Աքաղաղը ա՛յն ատեն կը կանչէ, երբ դրախտի աքաղաղներու

---

39 J. Talko-Hryncewicz: Zarysy lecznictwa ludowego na Rusi poludniswej. Krakow 1893, 397.

40 R. V. Afanasjev: Poetičeskija vozrjenija Slavjan na prirodu. T. I. Moskva 1865, 518 und T. III (1869, Register „Pjetuch").

41 Sumcov: Kulturnyja pereživanija in Kievskaja Starina". T. XXIX (1890), Nr. 155, 84.

42 S. Fl. Marianu: Ornitologia poporana romana. T. II. Cernauti 1883, 243.

43 Marianu: անդ, 244.

44 M. N. Dhalla: History of Zoroastrism. New York 1938, 274, տո այդ 182.

45 Marianu, անդ, 242.

46 Afanasjev, անդ, I, 519. — Cf. H. Machal: Nakres Slovanskeho Bajeslovi, Praha 1891, 41.

*կանչը կը լսէ, բան մը՝ որ մարդիկ չեն լսեր*[46ա]*»:*

*Չեխերու քով ալ նուիրական էր աքլորը եւ ատոր համար դեռ այսօր ալ անոնց ժողովրդական երեւակայութեան մէջ տկար մնացորդ մը կայ երկնային աքաղաղի մասին: Ուկրայնացիներու պէս անոնք ալ կը պատմեն. Աքաղաղը՝ իր պոչին վրայ փետուր մը ունի, որ հրեշտակի մը թեւէն է առնուած, կարող կ՚ըլլայ հրեշտակներու երգը լսելու եւ իր կանչով հրեշտակներուն պատասխանելու: Ոչ ոք խնտալու է կանչող աքաղաղի մը վրայ, եթէ չ՚ուզեր դժբախտութեան մը հանդիպիլ*[47]*: Չեխերու քով մեծ յարգ կը վայելէ Պարոդարշի գաղափարականը — սպիտակ աքաղաղը — որ տան երջանկութիւն կ՚առթէ: Վնասակար անասունները գիշեր ատեն կը վախնան իրմէ, իսկ հաւերը չեն ենթարկուիր որեւէ վնասի*[48]*: Ինչպէս կը տեսնուի՝ այս գովասանքին իբր պսակ միայն մէկ բան կը պակսի, երկնային աքաղաղի լուսամօրուս պատկերէն առիւծին ունեցած սարսափը, ինչ որ յիշատակեցինք վերը նոր-պարսկական աւանդութեան մէջ:*

*Ցարդ յառաջ բերուած համեմատական նիւթէն, իբրեւ եզրակացութիւն, կը հետեւի. Ուր որ գերընական աքաղաղ մը երեւան կու գայ եւ կամ երկրաւոր աքաղաղներ հրեշտակներու հետ աղերսի մէջ կը դրուին, ըլլա՛յ երկնային աքաղաղ մը ամբողջ հրեշտակի մը հետ նոյնացուելով՝ ինչպէս Պարսից քով, ըլլա՛յ աքաղաղ մը հրեշտակի մը մասին (փետուր) հետ կապակցութեան մէջ դրուելով՝ ինչպէս՝ Ուքրայնացւոց ու Չեխերու քով, ըլլա՛յ վերջապէս աքաղաղի մը հրեշտակային աստիճան վերագրուելով, հրեշտակէ մը արթնցուելով, հրեշտակի երգ մը լսելով կամ հրեշտակ մը տեսնելով՝ ինչպէս Ռուսներու եւ Չեխերու, նաեւ Ռումէններու եւ Հայերու քով, մէկ խօսքով ուր որ հրեշտակ-աքաղաղ աղերս մը կը գտնուի՝ հոն սկիզբը գոյութիւն ունեցած է դիցաբանական հրեշտակ մը՝ Սրոշ Պարոդարշի հետ. առաջինը տեսակ մը հրեշտակապետ է պարսկական հին կրօնին* (Parsismus) *մէջ: Աւելի կամ պակաս կերպով նոյնացուած կամ տարագրուած են այդ երկուքը — Սրոշ եւ երկնային աքաղաղ — երկու հազար տարուան ընթացքին տեւական կորուստի մատնուելով աւանդութեան, կրելով նաեւ քրիստոնէական կամ իսլամական ազդեցութիւն:*

*Այս դատաստանը լուսաբանող հաստատութիւն մը կը ստանայ ուրիշ սլաւական աւանդութեամբ մը, որուն մէջ մազդեզական հաւատացեալներն արթնցնող Սրոշին տեղ՝ զարթուցիչ զանգակ մը երեւան կ՚ելլէ: Ինչպէս յիշած ենք՝ Հայ աւանդութիւն մը կ՚ըսէ որ երկրաւոր աքաղաղները երկնքի զանգակները կը լսեն: Եթէ այս աւանդութեան մէջ երկնային աքաղաղը բոլորովին աներեւութացած է՝ նման* բուլգարական *աւանդութեան մը մէջ՝ ան որոշ չափով մը պահուած է: Բուլգարները կը պատմեն. Երկինքը ոսկիէ զանգակ մը կայ, որ աքաղաղի առաջին կանչի ժամանակ կը զարնուի: Այս զանգակը նախ աքաղաղէ մը կը լսուի եւ հազիւ թէ ան կանչէ՝ բոլոր միւս աքաղաղները կը սկսին կանչել*[49]*: Ստոյգ է որ այդ «մէկ» աքաղաղը սկզբնաբար իրանեան երկնային աքաղաղն էր եւ թէ զանգակին տեղ Սրոշը կար, որ յետոյ — հաւանօրէն քրիստոնէական ազդեցութեամբ — ուրիշ իմաստ ստացած կամ իր տեղը զանգակը անցած է: Ուրիշ գոհացուցիչ մեկնութիւն մը չկայ այս գրոյցին:*

*Սլաւներէն դեռ կը մնան հարաւ-արեւելեան Սլովէնները, որոնց քով երկնային աքաղաղը թէեւ պահած է իր սկզբնական կերպարանքը, սակայն իր սկզբնական պաշտօնէն զատ՝ ուրիշ մըն ալ տրուած է: Սլովէնները կը պատմեն. Ամէնէն առաջ երկիրս անապատ ու պարապ էր. ամէն տեղ քարէ զատ ուրիշ բան չկար: Աստուած գթալով՝ իր աքաղաղը կը ղրկէ որ երկիրը պտղաբերէ: Աքաղաղը փոսի մը մէջ կը նստի եւ հաւկիթ մը կ՚ածէ: Հաւկիթը կը կոտրի եւ անկէ կը բխին եօթը գետեր, որոնք ամբողջ աշխարհը կ՚ոռոգեն, այնպէս որ քիչ ատենէն ամէն կողմ կանաչութիւն կը բուսնի եւ ծաղիկներ ու պտուղներ կը հասնին: Զրոյցին այս մասէն կը տեսնուի որ երկնային աքաղաղը հին յունական աշխարհա-հաւկթին հետ աղերսի*

---

46ա Gloger in „Zbiór wiadomošci“, I (Kraków 1877), 101.

47 J. Koštal: Ptactvo v nazorech, poverach 1 zvyčich lidu českeho, Ve Velkem Meziřici, 151.

48 Koštal, *անդ*, 153.

49 J. D. Kovačev: Narodnija astronomija i metereologija. Sofija 1914, 15.

մէջ կը դրուի[50]: Ջրոյցի շարունակութեան մէջ խօսք կ'ըլլայ թէ ի'նչպէս մարդիկ դրախտային կեանք մը կ'ունենան: Սակայն վերջաւորութեան մէջ երկնային աքաղաղը իր սկզբնական պաշտօնին մէջ կը ներկայանայ· զի «որպէս զի մարդիկ, որոնք ըստ ինքեան ազատ էին՝ անխորհուրդ կերպով չվնասուին՝ աստուածային աքաղաղը, երկինքը իր թեւերը կը թափահարէ ու ամէն առտու զանոնք կը կանչէ որ ուտեն կամ բան մը ընեն[51]»: Այս աքաղաղին մէջ ալ հաւանօրէն կը ցոլանայ գաղափարական պարսիկ զրոյցը, քանի որ կը կատարէ իր նախատիպարին էական պաշտօնը, առանց նկատի առնելու յետոյ վրայ եկած օտար պաշտօնները:

Իրանեան Պարոդարշի Մնացորդներ պահուած են նաեւ Ֆինո-Ուգրանացիներու եւ հաւանօրէն նաեւ հիւսիսային դիցաբանութեան մէջ:

Այսպէս կոչուած Արեւելեան Ֆիններէն (Ֆիններ, Եսթեր, Լիւեր) Եսթերը ամէնէն աւելի թարմ պահած են գերերկրային զարթուցիչի յիշատակը. վասն զի առոնք երկնային աքաղաղի մը մասին կը պատմեն, որ կէսգիշերին կամ արեւածագին կը կանչէ եւ ատով երկրի աքլորները կ'արթնցնէ[52]:

Գերերկրային աքաղաղի մասին լաւագոյն ըմբռնում մը պահուած է ուրիշ Ֆիննական ցեղի մը — Կեդրոնական Ռուսիոյ Վոտիակներու — քով: Զարմանալի չէ, քանի որ սա Սիբիրիներուն հետ Ֆին ժողովուրդներու մէջէն հնութեան մէջ ամէնէն երկար շփումը ունեցած է Իրանեաններու հետ: Վոտիակները կ'ապահովցնեն թէ. Երկրի տակը աքլոր մը կայ, որ երկրի աքաղաղները կ'արթնցնէ որ կանչեն[53]:

Ֆիններու դիցական աքաղաղները այնքան պարզ չեն. «ոսկեաքաղաղը», Ֆիննական գրութեանց (Runen) մէջ Աստուածամօր հետ կապակցութեան մէջ կը դրուի, նոյնպէս Ստեղծողին ոսկեմօրուք աքաղաղը գերերկրային էակներ են, որոնց կը հակադրուի ուրիշ Ֆիննական երգերու մէջ «երկաթակատար դժոխային աքլորը[54]»: Դժբախտաբար այս աքաղաղները չեն կրնար հոս մանրամասնօրէն խոշորացոյցի տակ դրուիլ: Երեւոյթներուն նայելով՝ հոս ալ սկիզբը իրանեան երկնային աքաղաղը կար: «Արարչին ոսկեաքաղաղը» հաւանօրէն արեւը կը մատնանշէ եւ կը յիշեցնէ Չինաց ու ուրիշ ժողովուրդներու «ոսկեաքաղաղը» եւ չինական աքլորին պէս սկզբնաբար Պարոդարշի վրայէն թափուած էր: Միւս կողմէ Ֆիններու դիցական աքաղաղները քրիստոնէական ազդեցութիւն ալ կրած են:

Մարդ կը փորձուի Ֆիններու գերերկրային աքաղաղները սկզբնական բնադիցաբանութեան վերաբերող էակներ նկատելու, այդ պարագային երկրաւոր աքաղաղը, անկախ օտար ազդեցութենէ, իբրեւ լոյսի ծանուցիչ՝ արեւը ներկայացնող մը պիտի ըլլար: Սակայն Ֆիններու երկնային աքաղաղի նկատմամբ այս տեսութիւնը անգոհացուցիչ է: Արդէն այն պարագան որ Ֆիններն ու Եսթերը քրիստոնէական թուականի սկիզբնաւորութեան ատեն մէկ ժողովուրդ կը կազմէին՝ բնադիցաբանական մեկնութիւնը հաւանական չի թուիր, քանի որ Եսթերը, ինչպէս ցուցուեցաւ, երկնային աքաղաղը, իբրեւ իրանեան ժառանգութիւն՝ արեւային գծերէ ազատ՝ բոլորովին մաքուր պահած են: Անկէ զատ՝ աքաղաղի սպիտակ տեսակարարը այսօր ալ Ֆիններու ժողովրդական հաւատքին մէջ դեր մը կը խաղայ[55] եւ թէ աքաղաղը, իբրեւ դիւահալած, Ֆիններու հին ժողովրդական հաւատքին ծանօթ է[56]: Եթէ J. Krohn կ'ապահովցնէ թէ այս թռչունը Ֆիննական ժողովրդական հաւատքին համեմատ անկախարդելի է[57], այն ատեն այս հաւատքը այնպիսի ցայտուն իրանեան կնիք կը կրէ որ Ֆիններու գերերկրային աքաղաղները իրաւամբ իբրեւ օտար ազդեցութիւն կրող հին աւանդութիւն՝ զարգացումի կամ ձեւափոխումի ենթարկուած պիտի նկատուին, քանի որ գիտենք թէ Ֆիններու ժողովրդական

---

[50] Preller, Griech. Mythologie, I, 35. — Cf. Machal, անդ, 10.

[51] Machal, անդ, 17.

[52] O. Loorits: Grundzüge des esthnischen Volksglaubens, Bd. I. Lund 1949, 416.

[53] G. V. Vereščagin: Votjaki Sarapolekago ujezda Vjatskoj Gubernij. St. Petersburg 1889, 140. Կամ J. W. Wasiljev: Übersicht über die heidnischen Gebräuche, Aberglauben und Religion der Wotjäken, Helsingfors 1902, 12.

[54] K. Krohn: Suomalaiset Syntyloitsut. Helsinki 1917, 94.

[55] Bantasalo: Der Viehstall im Volksglauben der Finnen in „Acta Academiae Scientiarum Falnicae". Serie B, T. XXXVIII. Helsinki 1938, 68.

[56] L. Simonsuuri: Myytillisia Tarinoita. Helsinki 1947, 76, 78, 117, 147, 150.

[57] J. Krohn: Suomen suvun pakanallinen jumalapalvelu. Helsingissa 1894, 126.

*հաւատքը իրանեան դիցաբանութենէն բազմաթիւ տարրներ առած է իր մէջը։*

*Իրանեան երկնային աքաղաղի ժողովրդական տեսութիւններու մէջ եղած ըմբռնումներու մասին ներկայ ցուցմունքները ամբողջական ըլլալու յաւակնութիւն չունին, անոնք գլխամամբ սահմանափակուած են Հայերու, Ասիոյ ուրիշ ժողովուրդներու, ինչպէս նաեւ Սլովէններու եւ ուգրոֆիննեան ցեղերու տեսութիւններու շուրջ։ Բայց այս ուղղութեամբ հաւանօրէն այս գրոյցին դեռ ուրիշ մնացորդները գտնուին։ Ուրիշ ժողովուրդներէն, օրինակ հիւսիսայիններու գերմանական աքաղաղներու մասին ուրիշ տեղ ընդարձակօրէն պիտի խօսուի*[58]*։ Ամէն պարագայի՝ այս ուսումնասիրութենէն երկու բան կը յստակուի. Նախ իրանեան գրոյցին անհամեմատ մեծ տարածութեամբ ճառագայթումը. երկրորդ՝ ժողովրդական հաւատքի անհաւատալիօրէն երկար տեւականութեան ոյժը։ Այո՛, այսպէս է. Քաղաքակիրթ ազգերու պատմութեան մէջ ամենահին աւանդութիւնը նոյն ազգերու հաւատքին ու սովորութիւններուն մէջ այնպէս ամրացած է որ յաճախ գրեթէ անջնջելի դարձած է։ Աւանդութիւնները, բայց մանաւանդ աւելորդապաշտական սովորութիւնները ամենաստոյգ ապացոյցներն են երբեմնի կենդանի հաւատքին։*

Dr. JOH. HAMBROER, Wien

Թարգմ. գերմ. սկզբնագրէ Հ. Ե. ՊՕՂՈՍԵԱՆ

[58] *Հիւսիսային ժողովուրդներու գերերկրային աքաղաղի մասին տե՛ս* O. Schrader-A. Nehring: Reallexikon der indogerman. Altertumskunde. Bd. I, Berlin-Leipzig 1917, 432. — Güntert: „Handbuch d. deutschen Aberglaubens“, III, 1334.

# Die Stellung des Armenischen im Kreise der indogermanischen Sprachen

**(Eine Untersuchung der indogermanischen Bestandteile des armenischen Wortschatzes)**

Dr. Georg Solta

**(Fortsetzung.)**

## GRUPPE B:

### Wörter, zu denen sich Verwandtschaftsbeziehungen in der Mehrzahl der anderen idg. Sprachen finden:

I. Substantiva:

1. *աղաւնի alauni* „Taube“. Hübschmann vacat; Walde-Pokorny I 93; Walde-Hofmann I 27; Pokorny 31; Adjarian I 125; Bugge KZ 32, 1; Pedersen KZ 38, 313. Dieses Wort gehört zur idg. Farbnamenwurzel **albh-* „weiß“: lat. *albus*, gr. *ἀλφός* „Ausschlag“, ahd. *albiz, elbiz* „Schwan“, aksl. *lebedь* „Schwan“. Die Wortsippe ist z. B. im Italischen sehr produktiv, dagegen im Griech. wie auch im Armen. ziemlich isoliert. Die Hesychglosse *ἀλωφούς· λευκούς* stimmt am besten zur arm. Grundform **alabh-ni-*[1], da hier wie dort eine zweisilbige Basis vorliegt, auf die übrigens auch die slav. (serb.) Intonation *labud* „Schwan“ hinweist. Vom lautlichen Standpunkt aus werden wir also eine Beziehung zwischen Griech. Arm. und Slav. annehmen. Eine Übereinstimmung zwischen Arm. Germ. Slav. ist die Verwendung der W. **albh-* zur Bildung von Vogelnamen.

2. *աղեղն aleln, alelan* „Bogen, Regenbogen“; *oln, olin* „Rückenwirbel, Schulter“; *il, iloy* „Spindel“. Diese Wörter, die etymologisch untereinander verwandt sind, fehlen bei Hübschmann AG; Walde-Pokorny I 156 f.; Lidén AST 127 ff.; Pokorny 308; Adjarian I 135. Es sind allerdings keine evidenten Wortgleichungen, die sich hier uns anbieten, aber trotzdem sind diese wurzelhaften Beziehungen einigermaßen bedeutend: gr. *ὠλένη* „Ellenbogen“, lat. *ulna*, air. *uilenn*

[1] Statt dessen plaidiert Pokorny Idg. Wb. 31 noch nachdrücklicher als Walde-Pokorny a. a. O. für eine Grundform **aləu-n-* (ohne bh-Suffix, im Ablaut zu *ἀλω-φούς*), die er in kelt. EN wiederfinden will: gall. *ALAUNOS*, brit. PN *ALAUNOS*, kymr. PN *Alun*.